# ՉԱՀԱԿԻՐ

ԱԶԳԱՅԻՆ ԳՐԱԿԱՆ ԸՆԿԵՐԱՅԻՆ ՇԱԲԱԹԱԹԵՐԹ

چاهاكير
جريدة أسبوعية
ص.ب ٢١١١ بالقاهرة ج.ع.م. ت ٩١٥٠١٣
صاحبة الامتياز: السيدة عايدة سيروبيان (بالايان)

TCHAHAKIR
HEBDOMADAIRE ARMENIEN
B.P. 2111 Le Caire (R.A.U.) · Tél. 915013
Adresse Télégraphique TCHAHAKIR, Cairo
Rédacteur en chef; SARKIS BALAYAN

Արտօնատէր — ԱՅՏԱ ՍԵՐՈՎԲԵԱՆ
Սեփականատէր խմբագիր — ՍԱՐԳԻՍ ՊԱԼԱԵԱՆ

Հիմնուած 1948ին
Տպաքանակ 3000

ՆՈՐ ՇՐՋԱՆ ԹԻՒ 400—ՀԻՆԳՇԱԲԹԻ 28 ՀՈԿՏԵՄԲԵՐ 1971 | ՀԱՏԸ ՋԵՌՔԷ 3 Եգ. Դհկ. կամ 25 Լիբ. Դհկ. | عدد ٤٠٠ — الخميس ٢٨ اكتوبر ١٩٧١


## Հ.Մ.Մ.Ի 50-ԱՄԵԱԿԻ ՀԱՆԴԻՍԱՒՈՐ ՆՇՈՒՄԸ ԵՐԵՒԱՆԻ ՄԷՋ

*Երկուշաբթի, 12 Հոկտեմբեր 1971, Երեւանի շախմատիստներու տան հանդիսասրահին մէջ նշուեցաւ՝ Հայ Մարմնամարզական Միութեան (Հ.Մ.Մ.) յիսնամեայ յոբելեանը։ Նախագահութեան կազմին մէջ էին Սփիւռքահայութեան հետ Մշակութային*

Հ.Մ.Մ.ի Յիսնամեակին առթիւ Մայր Հայրենիք մեկնած՝ շուրջ յիսուն անդամներէ բաղկացած պատուիրակութիւնը, Հոկտ. 7ին, Ս. Էջմիածնի մէջ ընդունուեցաւ Ամենայն Հայոց Հայրապետին կողմէ: Նկարին մէջ – Հ.Մ.Մ.ի պատուիրակութեան անդամները, Ս. Էջմիածնի Վեհարանին առջեւ՝ կը շրջապատեն Ամենայն Հայոց Հայրապետ՝ Վազգէն Ա. Կաթողիկոսը։

*Կապի Կոմիտէի Նախագահ Վարդգէս Համազասպեանը, Նախագահի տեղակալ և Հ.Մ.Մ.ի Հայրենի Յոբելինական յանձնաժողովի Նախագահ Մարտիրոս Մելքումեանը, Հայկական ԽՍՀ Նախարարաց խորհուրդի առընթեր Ֆիզիքական կուլտուրայի և սպորտի կոմիտէի նախագահի տեղակալ Հրանդ Շահինեանը, Հայաստանի Երիտասարդական կազմակերպութիւններու կոմիտէի նախագահ Ռոպէր Արզումանեանը, Հայ Մարմնամարզական Միութեան Պէյրութի շրջանի ատենապետ Տիգրան Սարաֆեանը, Միութեան Հալէպի, Դամասկոսի շրջաններու և կանանց մասնաճիւղերու ներկայացուցիչները։ Հանդիսաւոր նիստի բացումը կատարեց Մարտիրոս Մելքումեանը, որմէ ետք ողջոյնի խօսքերով հանդէս եկան նաև Հրանդ Շահինեանը, Ռոպերթ Արզումանեանը, որոնք գրուատեցին Հ.Մ.Մ.ի հայրենասիրական և ազգապահպանումի ի նպաստ տարած 50 ամեայ բեղուն գործունէութիւնը։*

## ՄԱՀ՝ ՄԵԹՐ ԸՆԿԵՐ ՖԻՐՈՒԶ ԽԱՆՋԱՏԵԱՆԻ

Ս. Դ. Հնչակեան Կուսակցութեան Կեդրոնական Վարչութիւնը, ցաւով կը հաղորդէ մահը՝ հնչակեան հին սերունդի լաւագոյն ներկայացուցիչներէն, հասարակական անխոնջ գործիչ, խմբագիր եւ դաստիարակ ՄԵԹՐ ԸՆԿ. ՖԻՐՈՒԶ ԽԱՆՋԱՏԵԱՆԻ, որ տեղի ունեցած է Հալէպի մէջ, Կիրակի, 10 Հոկտ. 1971, առաւօտեան ժամը 1ին, իր բնակարանին մէջ։

Թաղումը տեղի ունեցած է նոյն օրը կէսօրէ ետք ժամը 4ին, Ս. Գէորգ եկեղեցւոյ մէջ, ապա հանգուցեալին մարմինը ամփոփուած է Ազգ. գերեզմանատան մէջ:

Մեր ցաւակցութիւնները իր ընտանիքի անդամներուն եւ հարազատներուն:

Ս.Դ. ՀՆՉԱԿԵԱՆ ԿՈՒՍԱԿՑՈՒԹԵԱՆ
ԿԵԴՐՈՆԱԿԱՆ ՎԱՐՉՈՒԹԻՒՆ

*Այս տխուր առթիւ «Ջահակիր» իր խոր ցաւակցութիւնները կը յայտնէ ողբացեալի այրիին, զաւկին՝ Տէր և Տիկին Արա Խանզատեանին, ինչպէս նաև սգակիր բոլոր պարագաներուն:*

## ԺՈՂՈՎՐԴԱՅԻՆ ՉԻՆԱՍՏԱՆԸ ՄԱԿ–Ի ԱՆԴԱՄ

### ԱԶԳԱՅՆԱԿԱՆ ՉԻՆԱՍՏԱՆԸ ՀԵՌԱՑՈՒԵՑԱՒ

Երեքշաբթի 26 Հոկտեմբեր, ՄԱԿի Ընդհանուր Ժողովին մէջ քուէարկութեան դրուեցաւ, Ժողովրդային Չինաստանը Ազգերու Ժողովի անդամ ընդունելու՝ Ալպանիոյ կողմէ ներկայացուած առաջարկն ու բանաձեւը, որ ստացաւ 76 քուէ ի նպաստ, 35 քուէ դէմ եւ 17 ձեռնպահութիւններ։

Այսպիսով, Ժողովրդային Չինաստանը, որուն՝ ՄԱԿի անդամակցութեան առաջարկները բազմաթիւ տարիներէ ի վեր մերժուած էին, պաշտօնապէս հրաւիրուեցաւ տեղ գրաւելու ՄԱԿի մէջ՝ Ազգայնական Չինաստանի (Ֆորմոզա) գրաւած տեղը, ինչպէս նաեւ Ապահովութեան Խորհուրդի հինգ մնայուն անդամներէն մին դառնալու:

Կատարուած քուէարկութեան արդիւնքին հետեւանքով, Ազգայնական Չինաստանը հեռացուեցաւ ՄԱԿէն։

## ԱԶԳԱՅԻՆ ԺՈՂՈՎԻ ԸՆՏՐՈՒԹԻՒՆՆԵՐԸ

Եգիպտոսի Արաբական Հանրապետութեան Նոր Սահմանադրութեան որդեգրումին առթիւ, երէկ, Չորեքշաբթի 27 Հոկտեմբեր, Եգիպտոսի ընդհանուր տարածքին վրայ, ի բաց առեալ Սուէզի ջրանցքին երեք շրջաններէն (Սուէզ, Իսմայիլիա եւ Փոր-Սայիտ) եւ Սինայի շրջանէն, տեղի ունեցաւ ընդհ. քուէարկութիւն, ընտրելու համար Նոր Ազգային Ժողով մը բաղկացած 338 անդամներէ։

Շուրջ ութ միլիոն քաղաքացիներ դիմեցին դէպի քուէատուփ, 1600 թեկնածուներու մէջէն ընտրելու համար 338 հոգի:

Այս քուէարկութեանց վերջնական արդիւնքները յայտնի պիտի ըլլան այսօր։

## Նախագահ Անուար էլ Սատաթ Թրիփոլի Մեկնեցաւ Երէկ

Եգիպտոսի նախագահը Անուար էլ Սատաթ, Արաբ Հանրապետութեանց Դաշնակցութեան նախագահի իր հանգամանքով՝ երէկ, Չորեքշաբթի, կէսօրին Թրիփոլի (Լիպիա) մեկնեցաւ։

Թրիփոլիի օդանաւակայանին մէջ Անուար էլ Սատաթ ընդունուեցաւ նախագահական պատիւներով, Լիպիոյ Յեղափոխական Խորհուրդի նախագահ եւ վարչապետ՝ զօրավար Քազաֆիի, ինչպէս նաեւ Յեղափոխական Խորհուրդի միւս անդամներուն, բարձրաստիճան զինուորականներու եւ դիւանագիտական կազմին կողմէ։

Սատաթ – Քազաֆի բանակցութիւնները սկսան երէկ՝ երեկոյեան։

## Ս. Հայաստանի Արտաքին Գործոց Նախարար՝ ԲԱԼԱԲԵԿ ՄԱՐՏԻՐՈՍԵԱՆ ՄԱԿի Ընդհանուր Ժողովին Մասնակից

Լուսանկար՝ ԿԱՐՊԻՍ ՊՕՂՈՍԵԱՆԻ

*Ինչպէս մեր անցեալ թիւով հաղորդած էինք, ՄԱԿի Ընդհ. Ժողովի 26րդ նստաշրջանին, Սովետ Միութեան պատուիրակութեան մաս կը կազմեն՝ իբր գլխաւոր խորհրդականներ, Ս. Հայաստանի Արտաքին գործոց նախարար Բալաբեկ Մարտիրոսեան և ՄԱԿի մօտ Սովետ Ներկայացուցչութեան մնայուն անդամ և արտակարգ պատուիրակ ու իրաւասու նախարար՝ Վիքթոր Հ. Իսրայէլեան։*

*Նիւ Եորքէն ստացուած այս լուսանկարը, առնուած է ՄԱԿի մէջ՝ լրագրող և լուսանկարիչ Պր. Կարպիս Պօղոսեանի կողմէ և որ մեզի ուղարկուած է սիրայօժար։*

*Լուսանկարին մէջ ձախէն աջ՝ Ս. Հայաստանի արտաքին գործոց նախարարը՝ Բալաբեկ Մարտիրոսեան, մնայուն պատուիրակ Վիքթոր Իսրայէլեան և սովետ խորհրդական մը:*

# ՋԱՀԱԿԻՐ

ԱԶԳԱՅԻՆ ԳՐԱԿԱՆ ԸՆԿԵՐԱՅԻՆ ՇԱԲԱԹԱԹԵՐԹ

16 ԴԵԿՏ. 1971


**ՓԻՆԿ-ՓՈՆԿ**

## ՀԱՅ ՄԱՐԶԻԿՈՒՀԻԻ ՄԸ ՓԱՅԼՈՒՆ ՅԱՋՈՂՈՒԹԻՒՆԸ

ՀԵՐՄԻՆԷ ՊԱԼԱԵԱՆ

Անցեալ շաբթուան ընթացքին տեղի ունեցան՝ Գահիրէի արեւելեան շրջանի աղջկանց 18 վարժարաններու լաւագոյն փինկփոնկիստներու միջեւ, սեղանի թենիսի առաջնութեան մրցումները, որոնց մասնակցեցան աւելի քան 50 ուսանողուհիներ։

Այս մրցաշարքին առաջնութիւնը շահեցաւ Ալ-Սալամ գոլէճի բարձրագոյն կարգի աշակերտուհի Օր. Հերմինէ Պալաեան։

Հերմինէ Պալաեան արդէն ծանօթ է եգիպտահայ ակումբներէն ներս՝ իբրեւ լաւագոյն փինկ-փոնկիստ հայուհին։

Այս յաղթանակով, հայ ուսանողուհին իրաւունք ձեռք կը ձգէ՝ մասնակցելու Գահիրէի ախոյեանական մրցումներուն։

Կը յուսանք, որ Հերմինէ Պալաեան՝ ախոյեանական այդ մրցաշարքին եւս պատուաբեր արդիւնք ձեռք կը բերէ, ի պատիւ հայ ուսանողութեան։

Ուստի, սրտանց կը մաղթենք իրեն նորանոր յաջողութիւններ, որպէսզի ան կարողանայ հայ անունը միշտ բարձր պահել։

## Հ.Մ.Մ.-Ի ՅԻՍՆԱՄԵԱԿԻ ԵԶՐԱՓԱԿԻՉ ՀԱՆԴԻՍԱՒՈՐ ՆԻՍՏԸ

*(Շարունակութիւն Ն. էջէն)*

*Արդարացիօրէն Լիբանանի «Մարզական հայրը» նկատուող մարզական այս աննկուն գործիչը դասական գեղեցիկ պատկերով մը սկսաւ իր խօսքը կարծէք իր կարգին ապրելով այն բոլոր դժուարութիւնները, զոր «տանկոխելով է որ Հ.Մ.Մ.եան երիտասարդութիւնը կերտեց այս Մեծ Միութիւնը»։*

*Անդրադառնալէ ետք՝ Լիբանանի և ընդհանրապէս Միջին Արեւելքի մէջ Հ.Մ.Մ.ի ծաւալած գործունէութեան, Պր. Մաժտալանի գոհունակութեամբ նշեց Հ.Մ.Մ.ի ապագայ սերունդին կողմէ դեռ շաբաթ մը առաջ Յիսնամեակի փառահեղ Շքերթին ընթացքին արտասանուած բառերը՝* «Կեցցէ Հ.Մ.Մ.ը, հաւասարմութիւն Հայ եւ Արաբ Բարեկամութեան, փառք Լիբանանին»։

«Որպէ՛ս Հ.Մ.Մ.ի գործունէութեան մօտէն հետեւած անձ մը, *աւելցուց Պր. Մաժտալանի,* կրնամ համարձակօրէն վկայել, թէ Հ.Մ.Մ.ը յատկապէս Լիբանանի մէջ եղած է մարզական կեանքի առաջնորդներէն մէկը, ինչպէս նաեւ մշտահոս աղբիւր մը, որ սնուած է առանց ակնկալութեան, յանուն մարդկութեան, Լիբանանի մարզական, բարոյական թէ մշակութային կեանքի զարգացման համար»։

*Պր. Մաժտալանի, քանիցս խանդավառ ծափողջոյններով ընդմիջուած իր անկեղծ ու խանդավառ ելոյթը աւարտեց հետեւեալ խօսքերով.–*

«Օրէ Վսեմաշուք Նախարարը պետական պաշտօնով զբաղած ըլլալուն չստիպուէր այստեղէն հեռանալ, պիտի խնդրէի իրմէ, որ մեր սիրելի Վսեմաշուք Նախագահին փոխանցէր այս համեստ խնդրանքը՝ որ ոչ միայն Աշխատանքային Շքանշանով պէտք է պարգեւատրել այս ոսկի յոբելեանը տօնող Միութիւնը, որ յիսուն շքանշաններ զետեղած է Լիբանանի հողին վրայ, այլ պէտք է Լիբանանը դրոշմել անոր՝ Հ.Մ.Մ.ի սրտին վրայ»։

*Ի վերջոյ խօսք առաւ Հայաստանի Սփիւռքի և Զինկուլտուրայի Կոմիտէի Նախագահի Տեղակալ՝ Հրանդ Շահինեան, որ ջերմօրէն ողջունելէ ետք Ցոբելեար կազմակերպութիւնը՝ յանուն Մայր Հայրենիքի, մաղթեց, որ Հ.Մ.Մ.ի անունը եւ շուտով իր յայտնութիւնը կատարէ Հայաստանի մարզական կազմակերպութեանց շարքին։*

*Հայաստանի Սփիւռքի Կոմիտէին կողմէ գեղեցիկ յուշանուէր մը յանձնելէ ետք Ցոբելեար Կազմակերպութեան Պէյրութի Շրջանի Ատենապետ՝ ընկեր Տ. Սարաֆեանին, Պր. Հ. Շահինեան յատուկ Պատուոյ Գրերով պարգեւատրեց Միութեան տասնըհինգ ղեկավարներ։ Այս աննախընթաց իրադարձութիւնը ողջունուեցաւ հանդիսականներու սրտաբուխ ծափահարութիւններով։ Արդարեւ, ինչպէս նշեց հայրենի մեծարգոյ անձնաւորութիւնը, առաջին անգամն է որ հայրենի իշխանութիւնները նման Պատուոյ Գիրերով կը վարձատրեն Սփիւռքահայ կազմակերպութեան մը ղեկավարներ։*

*Պր. Շահինեանին յաջորդեց Հայաստանի Զբօսաշրջութեան Տնօրէն և Ֆութպոլի Ֆետերասիոնի Նախագահ՝ Պր. Սուրէն Զաքարեան, որ իր կարգին ողջունելէ ետք Ցոբելեար Կազմակերպութիւնը, կարդաց Հայաստանի Երիտասարդական Կազմակերպութիւններու Կոմիտէի ողջոյնի խօսքը՝ արձանագրուած գեղակերտ յուշագիրքի մը վրայ։*

*Հանդիսութեան առաջին մասին յաջորդեց գեղարուեստական բարձրորակ յայտագիր մը, որուն իրենց սիրայօժար մասնակցութիւնը բերին ծանօթ արուեստագէտ-արուեստագիտուհիներ։*

*Մեծապէս գնահատուեցան Կարապետ Ջաթըրեանի մեներգները՝ «Հայրենի Կարօտ»ը (Ա. Պատմագրեան) և Դաւիթ Բէկ Օփերայէն՝ «Գուսանի Երգը» (Ա. Տիգրանեան)։*

*Տպաւորիչ ելոյթներ ունեցան օրուան ասմունքողները՝ Վարդան Զարըքեան (Մ. Մարգարեանի «Հայաստան»ը) և Թորոս Սպիտանեան (Վ. Թէքէեանի «Աղօթք Վաղուան Սեմին Առջև»)։*

*Ցայտուն ելոյթ մը եղաւ Տիկին Նինա Պակտանեասար Սուքքարի մենանուագը՝ քանոնի վրայ։ Խանդավառ ծափահարութիւններ խլեց Թուֆիք Սուքքարի «Լիբանանեան Սուիթ»ը՝ քանոնի համար, զոր շնորհալիօրէն կատարեց Տիկին Սուքքար։*

*Եւ վերջապէս, գեղարուեստական նոյն յայտագրին իր մասնակցութիւնը բերաւ երգչուհի՝ Տիկին Արփինէ Փեհլիվանեան՝ Հ. Ստեփանեանի «Հերոսուհի» Օփերայէն և Արմէն Այվազեանի «Մինթոյե Փարիզում» օփերայէն «Նաթաշայի Արիա»յի կատարումով։*

*Գեղարուեստական բաժինը վերջ գտաւ «Երեւան-Էրէբունի» զուգերգով՝ զոր կատարեցին Արփինէ Փեհլիվանեան և Կարապետ Ջաթըրեան։*

*Գեղարուեստական այս բարձրորակ յայտագրին արժանացած գնահատանքին ու արձանագրած յաջողութեան մէջ մեծ բաժին ունեցաւ անկասկած, գաղութիս ծանօթ ու վարպետ դաշնակահարներէն՝ Պր. Ստեփան Էմմիեան, որուն նուագակցութիւնը աւելցուց յայտագիրին փայլք։*

*Ներկայ անձնաւորութիւններն ու Հ.Մ.Մ.ականներու և Հ.Մ.Մ.ասէրներու մեծ հասարակութիւնը օրահէն բաժնուեցաւ՝ ըՍփիւռքահայ երիտասարդական այս մեծ Կազմակերպութեան գնահատանքի ու յարգանքի իր բաժինը բերած ըլլալու արդար գոհունակութեամբ, իբրեւ նուազագոյն պարտք՝ անոր յիսնամեայ բազմաբեղուն գործունէութեան։*

**ԹՂԹԱԿԻՑ**

## ՆՈՒԻՐԱՏՈՒՈՒԹԻՒՆՆԵՐ

### (ԵԳԻՊՏԱԿԱՆ ԴԱՀԵԿԱՆՈՎ)

*Ողբ. Յակոբ Գ. Փամպուքճեանի մահուան քառասունքին առթիւ՝ Տէր և Տիկին Վահէ Գասապեան կը նուիրեն Գալուստեանի ճաշի սեղանին 100 (Ստանալ «Ջահակիր»էն)*

### «ՋԱՀԱԿԻՐ»ԻՆ

*Տէր և Տիկին ընկեր Սողոմոն Ելէնեան (Դամասկոսէն), բարձր գնահատելով «Ջահակիր»ի գաղափարանուէր և հայրենասիրական ուղղութիւնը, կը նուիրեն 2500 ե.դ.։*

*Պր. Պօղոս Պօղոսեանի ընդ Օր. Անահիտ Գոչեանի բարեբաստիկ ամուսնութեան ուրախ առթիւ, Պր. Պետրոս Տընկճեան կը նուիրէ 100 ե.դ.։*

### ՀԱՅԿԱԿԱՆ ԸՆԹԵՐՑԱՍՐԱՀԻՆ

*Դամասկոսի մեր գաղափարանուէր ընկերներէն Սողոմոն Ելէնեան և իր ազնուափայլ Տիկինը, որ օրերս կ՚այցելեն Եգիպտոս, իրենց այցելութիւններու շարքին եղան նաև Գահիրէի Հայկական Ընթերցասրահը, ուր ականատես եղան Հ.Մ.Մ.եան երիտասարդութեան՝ ի նպաստ հայապահպանման գործին կատարած աշխատանքներուն և խանդավառուած՝ Սրահին բարեզարդման համար նուիրեցին 2500 ե.դ.։*

### ՍՏԱՑՈՒԱԾ ԲԱԺԱՆՈՐԴԱԳՐՈՒԹԻՒՆ

*Գուաթոնէն Ընկեր ՄԱՐԳԱՐ ՇԱՀՊԱԶԵԱՆ կը նորոգէ իր բաժանորդագրութիւնը՝ նուիրելով 15 տոլար։*





# ՆՈՐ ՏԱՐԻՆ ԵՒ ՍՈՒՐԲ ԾՆՈՒՆԴԸ

## ԻՐԵՆՑ ԲԱՐԵԿԱՄՆԵՐՈՒՆ, ՅԱՃԱԽՈՐԴՆԵՐՈՒՆ ԵՒ ԱՇԽԱՏԱՒՈՐՆԵՐՈՒՆ

## ❁ ❁ ԿԸ ՇՆՈՐՀԱՒՈՐԵՆ ❁ ❁

| | | | | |
|---|---|---|---|---|
| ՀԱՅԿԱԿԱՆ ԸՆԹԵՐՑԱՍՐԱՀ<br>Գահիրէ Հեռ. 934908 | ԱՒԵՏԻՍ Ն. ԶԱԳԸՃԵԱՆ ԵՒ ԸՆԿ.<br>ՀԱՍՏԱՏՈՒԹԻՒՆ<br>Աթապայի հրապարակ<br>Գահիրէ Հեռ. 906433-906451 | ՆԱՍԻՊ–ԹՈՐԳՈՄ | ԱՐԹՕ ՊԼԸՔՏԱՆԵԱՆ<br>Գահիրէ Հեռ. 826211-826291 | ՎԱՀԱՆ Տ. ԱԼԵՔՍԱՆԵԱՆ<br>Աղեքսանդրիա Հեռ. 28173 |
| ԶԱՐԵՀ ՍԱԳԱՅԵԱՆ<br>Հելիոպոլիս Հեռ. 62302 | ԵԴՈՒԱՐԴ ԶՕՐԱՅԵԱՆ<br>Գահիրէ Հեռ. 906479 | ՕՆՆԻԿ Կ. ԱԼԵՔՍԱՆԵԱՆ<br>Գահիրէ Հեռ. 900186-26535 | ՏԷՐ ԵՒ ՏԻԿԻՆ<br>ՌԱՖՖԻ ԳԱԼԸՆԵԱՆ<br>Աղեքսանդրիա Հեռ. 27931 | ՏԷՐ ԵՒ ՏԻԿԻՆ<br>ՅԱԿՈԲ ԷՔՍԷՐՃԵԱՆ<br>Հելիոպոլիս Հեռ. 855920 |
| ՏԷՐ ԵՒ ՏԻԿԻՆ<br>ԿԱՐԱՊԵՏ ԹԵՐԶԵԱՆ<br>Աղեքսանդրիա Հեռ. 33712 | ԱՆԴՐԱՆԻԿ ՄԵՍՐՈՊԵԱՆ<br>ՊԱՄՊՈՒԷ ԿԱՐԱՍԻՆԵՐ<br>195, Ռամսէս Պողոտայ<br>Գահիրէ Հեռ. 900738 | ՀԱՅԿ ՕՀԱՆՆԷՍԵԱՆ<br>Գահիրէ Հեռ. 39825 | L I L I<br>ՅԱԿՈԲ Մ. ԺԱՄԿՈՉԵԱՆ<br>ՓՈԲՐԻԿՆԵ ՈՒ<br>ԿՕՇԻԿԻ ՎԱՃԱՌԱՏՈՒՆ<br>22, Քասր էլ Նիլ փողոց<br>Գահիրէ Հեռ. 54480 | ARABIAN NEON &<br>FLUORESENT LIGHT CO.<br>ՓՕԼ ՔԻԼԻՏՃԵԱՆ<br>135, Մոհամէտ Ֆարիտ փողոց, Ապտին<br>Գահիրէ Հեռ. 43816-44792 |
| STUDIO ANTRO<br>ԱՆԴՐԱՆԻԿ ՎԱՐԺԱՊԵՏԵԱՆ<br>37, Թալաաթ Հարպ փողոց<br>Գահիրէ Հեռ. 75542 | ԺԱՔ ՄԵՍՐՈՊԵԱՆ<br>Գահիրէ Հեռ. 911220 | MAISON ROYALE<br>ԽՈՍՐՈՎ ԶԱՔԱՐԵԱՆ<br>Գահիրէ Հեռ. 910402 | BIJOUTERIE DIRAN<br>ՏԻՐԱՆ ԿԻՒՐԵՂԵԱՆ ԵՒ ԸՆԿ.<br>2, Պաղտաս փողոց<br>Հելիոպոլիս Հեռ. 62309 | ԱՐԱՄ ՖԵՐՀԱՏ<br>Գահիրէ Հեռ. 43957-44904 |
| ՏՈՔԹ. ՀԱՆՐԻ ԲԵՏԷՐԵԱՆ<br>Գահիրէ Հեռ. 73321 | ՊԵՐՃ ՕՏԱՊԱՇԵԱՆ<br>Գահիրէ Հեռ. 918516 | MICKY MOUSE<br>ՎԱՐՈՒԺԱՆ ԱԶՈՒԿԵԱՆ<br>26 Յուլիս պողոտայ, թիւ 8<br>Գահիրէ Հեռ. 915570 | Ն. ԵՒ Ե. ԴԱՒԻԹԵԱՆ ԵՂԲԱՐՔ<br>Manchester House<br>Աղեքսանդրիա Հեռ. 24996 | ՏԷՐ ԵՒ ՏԻԿԻՆ<br>ԳԱԲՐԻԷԼ ՏՕՍԹՈՒՄԵԱՆ<br>Աղեքսանդրիա Հեռ. 33546 |
| ՍԱՐԳԻՍ ՎՈՒԳՈՒՖԵԱՆ<br>Գահիրէ Հեռ. 917039 | ՏԷՐ ԵՒ ՏԻԿԻՆ<br>ԱՒԵՏԻՍ Խ. ԶԱԳԸՃԵԱՆ<br>Գահիրէ Հեռ. 915072 | ՏԷՐ ԵՒ ՏԻԿԻՆ<br>ՍԱՀԱԿ ԳԱԼԱՅՃԵԱՆ<br>Գահիրէ Հեռ. 910810 | ՏԷՐ ԵՒ ՏԻԿԻՆ<br>ԱՐԹԻՆ ԹՐԱՅԵԱՆ<br>Գահիրէ | STUDIO PARIS<br>ԱՐԱՔՍԻ ՕՀԱՆԵԱՆ<br>Գահիրէ Հեռ. 56775 |
| ՎԱՀԷ ԴԵՐՁԱԿԵԱՆ ԵՒ ԸՆԿ.<br>103, Կումհուրիէ փողոց<br>Գահիրէ Հեռ. 900563 | ՏԻԿ. ՇՈՒՇԱՆ ՎԱՐԴԵԱՆ<br>Հելիոպոլիս Հեռ. 62700 | ՏԷՐ ԵՒ ՏԻԿԻՆ<br>ՎԱՀՐԱՄ ԲՐՈՒՏԵԱՆ<br>Գահիրէ Հեռ. 906905 | ՄԷԹՐ ՊԱՐՈՅՐ ՄԱՍԻԿԵԱՆ<br>Գահիրէ Հեռ. 42259 | ՎԱՀԱԳՆ ՏԵՓՈՅԵԱՆ<br>ԷԼԵԿՏՐԱԳԷՏ<br>Գահիրէ Հեռ. 79381 |
| ՕՐ. ԶԱՊԷԼ ՍՏԵՓԱՆԵԱՆ<br>Գահիրէ | ՏԷՐ ԵՒ ՏԻԿԻՆ<br>ԹՈՎՄԱՍ ՄԱՆՃԸԼԸՔԵԱՆ<br>Աղեքսանդրիա | ELPAR SHOES<br>ՎՐԷԺ Լ. ՍԷՖԵՐԵԱՆ<br>Աղեքսանդրիա Հեռ. 24073 | CORDONNERIE CECIL<br>ՎԱՀՐԱՄ ԹՕՍՈՒՆԵԱՆ<br>Աղեքսանդրիա Հեռ. 22425 | ՊԵՏՐՈՍ ՏԸՆԿՃԵԱՆ<br>ԳՈՀԱՐԱՎԱՃԱՌ<br>Գահիրէ |
| ՍԱՐԳԻՍ ՀԱՄԲԱՐՁՈՒՄԵԱՆ<br>ԴԵՐՁԱԿ<br>Աղեքսանդրիա Հեռ. 34572 | MAISAN D'ART<br>ՑՈԼԱԿ ԵՐԶՆԿԱՑԵԱՆ ԵՒ ԸՆԿ.<br>29, Աղթէլ Խալէք Սարուաթ<br>Գահիրէ Հեռ. 40584 | ՏԷՐ ԵՒ ՏԻԿԻՆ<br>ՅՈՎՍԷՓ ԿԻՒՄԻՒՇԵԱՆ<br>ՈՍԿԵՐԻՉ<br>Աղեքսանդրիա Հեռ. 27139 | ՏԷՐ ԵՒ ՏԻԿԻՆ<br>ՀԱՅԿ ՏԷՕՔՄԷՃԵԱՆ<br>Աղեքսանդրիա | ՆՈՒՊԱՐ ԿԵՐԻԿԵԱՆ<br>ԳՈՀԱՐԱՎԱՃԱՌ<br>Գահիրէ |

